Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 13 ՀՈՒԼԻՍ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*






# ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ


*Գ. ՍՏԵՓԱՆՅԱՆ*
ՀԿԿ Կենտկոմի գյուղբաժնի վարիչ


*Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում նախապատրաստական լուրջ աշխատանքներ են տարվում հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը կազմակերպված անցկացնելու համար։ Այս տարի կատարվելու է 256 հազար հեկտար հացահատիկի բերքահավաք։*

*Ռեսպուբլիկայի ցածրադիր գոտու մի շարք շրջանների, ինչպես օրինակ Ղափանի, Մեղրու, Գորիսի և Արարատյան հարթավայրի շատ կոլտնտեսություններ արդեն հնձել են գարու և ցորենի առաջին հեկտարները։*

*Այս տարի ռեսպուբլիկայի ավելի քան 588 կոլտնտեսություններ բերքահավաքը պետք է կատարեն առավելապես իրենց սեփական մեքենաներով։ «Կոլտնտեսային*







կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանների վերակազմման» մասին ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը սոցիալիստական գյուղատնտեսության հզոր վերելքի նոր էտապ է հանդիսանում։ ՄՏ կայանների վերակազմման կապակցությամբ կոլտնտեսությունները գնել են 1858 տրակտոր, 576 կոմբայն, 219 կալսիչ և ավելի քան 7000 գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։ Կոլտնտեսություններում մշտական աշխատանքի են անցել գյուղատնտեսական բազմաթիվ մասնագետներ և մեխանիզատորներ, որոնք այժմ գործունյա աշխատանք են տանում բերքահավաքը բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու համար։

Ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում արդեն կազմակերպված են շրջսովետների գործկոմներին կից գյուղատնտեսական տեսչություններ, որոնք արդեն սկսել են ղեկավարել գյուղատնտեսական աշխատանքները։

Բերքահավաքը կազմակերպված և անկորուստ անցկացնելու համար նախապատրաստական լուրջ աշխատանք են ծավալել Բասարգեչարի, Մարտունու, Ախուրյանի, Նոր Բայազետի շրջանների կոլտնտեսու-



թյուններն ու վերանորոգման տեխնիկական կայանները։ Էջմիածնի շրջանի Լենինի անվան, Մարտունու շրջանի Ձորագյուղ և Վարդենիկ գյուղերի կոլտնտեսությունները ՄՏ կայաններից գնելով մեծ քանակությամբ գյուղատնտեսական տեխնիկա, կոլտնտեսային մասնագետների ուժերով նորոգման կայանների օգնությամբ ամեն ջանք գործադրում են հնձող և կալսիչ մեքենաները կարգ ու պատրաստ դուրս բերելու բերքահավաքի։ Հունիսի 10-ի տվյալներով, ռեսպուբլիկայի ՄՏ կայաններում և ՆՏ կայաններում եղած կոմբայնների վերանորոգումը կատարված է 92,3 տոկոսով, իսկ Թալինի, Ղուկասյանի, Կիրովականի, Եղեգնաձորի ՄՏ կայաններում և նորոգման տեխնիկական կայաններում այն կազմում է 39—78 տոկոս։

Այժմ մեր հիմնական խնդիրը այն է, որպեսզի մի քանի օրվա ընթացքում վերանորոգել և կարգի բերել գյուղատնտեսական բոլոր մեքենաներն ու գործիքները։ Հոգ տանել պակասող մյուս մանր գործիքները ձեռք բերելու մասին։ Չպետք է կրկնել անցյալ տարիներին թույլ տրված սխալները, երբ առանձին կոլտնտեսություններում բերքահավաքի եռուն շրջանում, ոչ

միայն նորմալ չէին գործում կոմբայնները և գյուղատնտեսական մյուս մեքենաները, այլև կոլտնտեսականները ապահովված չէին գերանդիներով, մանգաղներով, փոցխերով և այլ մանր գործիքներով, որոնց պակասը խիստ կերպով ազդեց հնձի աշխատանքների վրա։

Կարևոր նշանակություն ունի կոլտնտեսությունների արհեստանոցները վերանորոգման նյութերով ապահովելու հարցը։ Ժամանակին պետք է ձեռք բերել անհրաժեշտ երկաթեղենը, փայտեղենը և վառելիքը՝ մանր նորոգումները արագ կատարելու համար։ ՄՏ կայաններն ու ՆՏ կայանները ուշադիր կերպով պետք է հետևեն մեքենաների և գյուղգործիքների ժամանակին նորոգման գործում կոլտնտեսություններին և սովխոզներին օգնելու համար։ Անխափան կերպով պետք է գործեն շրջիկ արհեստանոցները։

Բերքահավաքի աշխատանքը սեղմ ժամկետներում անցկացնելու գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի ճիշտ կազմակերպումը, աշխատավոր ձեռքերի ճիշտ դասավորումը, արտադրական բրիգադների խելացիորեն կոմպլեկտավորումը, յուրաքանչյուր կոլտնտեսությունում բերքա-



հավաքի անցկացման գրաֆիկ-պլանների կազմումը և պրակտիկ աշխատանքում նրա կիրառումը։

Հացահատիկային կուլտուրաների բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու գործում խոշոր նշանակություն ունի անջատ բերքահավաքի անցկացումը։ Այդ պրոգրեսիվ եղանակը ամենից առաջ հայտնի է իր բարձր էֆեկտիվությամբ, որը ոչ միայն արագացնում է բերքահավաքի տեմպը, այլև մեծ հնարավորություն է ընձեռում հացահատիկի կորուստները կանխելու համար։ Սակայն պետք է ընդգծել, որ բերքահավաքի այդ առաջավոր եղանակի կիրառումը դեռևս մասսայական ծավալում չի ստացել մեր կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Այդ բանի համար եղած մեքենաներն ու գործիքները շատ հաճախ չեն ծառայում իրենց նպատակին։ Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները մտնելով սոցիալիստական մրցության մեջ, պարտավորություն են ստանձնել այս տարի հացահատիկի անջատ բերքահավաք կատարել 25—30 հազար հեկտարի վրա։

Բերքահավաքի ընթացքում կորուստները կանխելու նպատակով պետք է հասնել այն

քանին, որպեսզի խզում չառաջանա հնձի, փոխադրման և կալսման միջև։ Անհրաժեշտ է բոլոր կոլտնտեսություններում և սովխոզներում կազմակերպել հասկահավաքի աշխատանքը, ինչպես նաև կոմբայնով հնձած դաշտամասերում, քարաբլուրների և առուների եզրերում, անհարթ տարածություններում, փոքր կտորներով մնացած հացահատիկի հավաքումը կոլտնտեսականների և պատանիների ուժերով։ Անհրաժեշտ է ժամանակին և կազմակերպված սպասարկել հնձող ու կալսող ագրեգատների աշխատանքը, առանց ձգձգման փոխադրել կալսված հացահատիկը, այն չորացնել և խնամքով ամբարել։ Առանձնակի ուշադրություն պետք է դարձնել սերմնադաշտերի ժամանակին հնձման, կալսման ու գալիք տարվա սերմացուների առանձնացման գործին։ Խելացիորեն պետք է կազմակերպել կոլտնտեսություններում ու սովխոզներում գործող ավտոտրանսպորտի և փոխադրման մյուս միջոցների անխափան աշխատանքը։

Բերքահավաքին զուգընթաց կոլտնտեսությունների ղեկավարները և շրջանային կազմակերպությունները լուրջ աշխատանք պետք է ծավալեն հացամթերումները ժամկետից շուտ կատարելու, հարազատ պետությանը



ավելի շատ ու բարձր որակի հացահատիկ հանձնելու համար։

Բերքահավաքը և հացամթերումները սեղմ ժամկետներում կատարելու գործում մեծ անելիք ունեն ռեսպուբլիկայի մատակարարող օրգանները՝ Հայկոոպը, գյուղատնտեսության մինիստրության նյութա-տեխնիկական և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից հացամթերումների վարչությունները և մյուս մատակարարող օրգանները, որոնք պարտավոր են անխափան կերպով սպասարկել կոլտնտեսություններին և սովխոզներին։

Բերքահավաքը տնտեսական տարվա գյուղատնտեսական աշխատանքների եզրափակիչ էտապն է։ Պետական-տնտեսական այդ կարևոր կամպանիան բարձր կազմակերպվածությամբ և սեղմ ժամկետներում անցկացնելը՝ յուրաքանչյուր աշխատողի պատվի գործն է։ Անհրաժեշտ է գյուղում տարվող քաղաքական-մասսայական ու կազմակերպչական ամբողջ աշխատանքը ուղղել բերքահավաքը և հացամթերումները սեղմ ժամկետներում կատարելու գործին։

Պետք է լայն կերպով ծավալել սոցիալիստական մրցությունը բոլոր կոլտնտեսություններում, սովխոզներում, արտադրա-

կան բրիգադաներում, և օղակներում։ Պայքար ծավալել հնձի, փոխադրման ու կալսման գործում սահմանված օրվա առաջադրանքների կատարման և գերակատարման համար։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքի ծանրությունը պետք է փոխադրել դաշտ, հոգ տանելով դաշտում, հատկապես հեռավոր տարածություններում աշխատող կոլտնտեսականների և մեխանիզատորների համար աշխատանքային նորմալ պայմաններ ստեղծելու մասին։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավորվել են այս տարի հացահատիկի համախառն արտադրությունը հասցնել 300 հազար տոննայի և հացահատիկային կուլտուրաների ամբողջ ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով հավաքել ոչ պակաս 11,5 ցենտներ բերք։ Բերքահավաքի աշխատանքներին լուրջ կերպով նախապատրաստվելն ու նրա սեղմ ժամկետներում ու անկորուստ հավաքելը ստանձնած պարտավորությունների կատարման և գերակատարման կարևորագույն պայմանն է։

---

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՆՈՐ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը նշեց մեր երկրի գյուղատնտեսության հետագա բուռն վերելքի պատմական ծրագիրը։ Հետևողականորեն կենսագործելով համագումարի առաջադրած խնդիրները, ՍՄԿՊ Կենտկոմը վերջին տարիներս մի շարք խոշոր միջոցառումներ ձեռնարկեց սոցիալիստական գյուղատնտեսության անսպառ հնարավորություններն արդյունավետ օգտագործելու, երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները տնտեսապես ու կազմակերպչորեն է՛լ ավելի ամրապնդելու, գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ, մեր երկրի գյուղատնտեսական արտադրությունը բարձրացավ մի նոր մակարդակի։ Դա տեղի ունեցավ թե՛ գյուղա-

տնտեսական մեքենաների արտադրության բացարձակ ծավալի և թե՛ արտադրության զարգացման տեմպերի տեսակետից։ Ընդ որում գյուղատնտեսական արտադրության զարգացման տեմպերի տեսակետից մեր երկիրը մի քանի անգամ առաջ է անցել ԱՄՆ-ից։ Այսպես. եթե 1950 թվականից մինչև 1953 թվականը ՍՍՌՄ-ում գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճման տարեկան միջին տեմպը հավասար է եղել 1,6 տոկոսի, իսկ ԱՄՆ-ում՝ 1,7 տոկոսի, ապա վերջին չորս տարում այդ արտադրանքի տարեկան միջին աճը ՍՍՌՄ-ում հասել է մինչև 7,1 տոկոսի, իսկ ԱՄՆ-ում ընկել է մինչև 1,1 տոկոսի։

Կոլտնտեսային կարգի հետագա ամրապնդման գործում վիթխարի նշանակություն ունեցավ մեքենա-տրակտորային կայանների վերակազմումը, որն իրականացվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման առաջին սեսիայի ընդունած օրենքի հիման վրա։

Սակայն գյուղատնտեսության հետագա վերելքի խնդիրը պահանջում էր բարելավել գյուղատնտեսական մթերքների մթերումների սիստեմը, լուծել կոլտնտեսություններից պետության կողմից գնվող արտադրանքի գներ սահմանելու պրոբլեմը։



Այդ հարցերը քննարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, որը տեղի ունեցավ 1955 թվականի հունիսի 17-ից 18-ը։ Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի Առաջին քարտուղար և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ հատուկ որոշում ընդունեց «Պարտադիր հանձնումները և ՄՏ կայանների աշխատանքների դիմաց բնավարձը վերացնելու մասին, գյուղատընտեսական մթերքների մթերումների նոր կարգի, գների և պայմանների մասին»։

Պլենումը նշեց, որ սոցիալիստական պետության զարգացման բոլոր էտապներում Կոմունիստական պարտիան անդուլ կերպով ամրապնդել է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ Գյուղի և քաղաքի աշխատավորների տնտեսական կապերի ամրապնդման գործում խոշոր դեր են խաղացել գյուղատնտեսական մթերքների մթերումները։ Սոցիալիստական շինարարության կոնկրետ պայմանների համեմատ, պարտիան միշտ վարել է մթերումների այնպիսի քաղաքականություն, որը ելել է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն ամրապնդելու, կոլտնտեսային կարգն է՛լ ավելի զարգացնելու և գյուղատնտեսական մթերքների նկատ-

մամբ բնակչության ու արդյունաբերության կարիքները բավարարելու շահերից։

Մինչև հիմա գոյություն ուներ մթերումների այսպիսի սիստեմ։ Պետությունը ՄՏ կայանների միջոցով սպասարկում էր կոլտնտեսություններին։ Դրա փոխարեն կոլտնտեսությունները, սովխոզների հետ միասին հոգում էին գյուղատնտեսական մթերքների ապարեգում երկրի պահանջմունքներն ապահովելու մասին։ Օրինակ, ՄՏԿ-ների աշխատանքի դիմաց որպես բնավարձ պետությունը ստանում էր մոտավորապես մեկ միլիարդ փութ հացահատիկ։

Բայց կոլտնտեսային կարգի հետագա ամրապնդման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու կապակցությամբ մթերումների նախկին սիստեմն այլևս չի համապատասխանում նոր պայմաններին։ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը նշեց, որ ՄՏ կայանների վերակազմումից հետո այլևս անհրաժեշտություն չկա պահպանելու պարտադիր հանձնումները և ՄՏ կայանների աշխատանքի դիմաց բնավարձը և որ ներկայումս նպատակահարմար է անցնել պետական մթերումների միասնական ձևի՝ գյուղատնտեսական մթերքների գնումների։ Բայց այնուհանդերձ մթերումների սիստեմը առ-



այժմ չպետք է լրովին վերանա։ Այն պետք է մասամբ պահպանվի, որպեսզի պետությունը կարողանա անհրաժեշտ քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ ստանալ և բավարարել ինչպես բնակչության, այնպես էլ արդյունաբերության պահանջմունքները։

Պլենումը նպատակահարմար գտավ ռեսպուբլիկաների, երկրամասերի, մարզերի, կոլտնտեսությունների և սովխոզների գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանները սահմանել մի շարք տարիների համար՝ հետագայում դրանց մեջ ավելացման իմաստով ուղղումներ մտցնելու պայմանով, ելնելով կոնկրետ բերքատվությունից։

Այս միջոցառումների կենսագործումը պայմաններ կստեղծի գյուղատնտեսական մթերքների արտադրության հուժկու վերելքի համար։ Բայց այդ խնդրի հաջող լուծումը պահանջում է սահմանել կոլտնտեսություններում մթերվող գյուղատնտեսական մթերքների տնտեսապես հիմնավորված գներ։

Պլենումը մատնանշեց, որ այդ գները սահմանելիս, պետք է հաշվի առնել կոլտնտեսությունների ծախսումները հատուցելու անհրաժեշտությունը՝ ելնելով արտադրության

տվյալ գոտու միջին պայմաններից, աշխատանքի արտադրողականության աճից, մթերքների ինքնարժեքի իջեցումից և սոցիալիստական ընդլայնված վերարտադրության համար անհրաժեշտ կուտակումների ստեղծումից։

Նոր գները պետք է լինեն և՛ կայուն և՛ շարժուն։ Կայուն պետք է լինեն, նորմալ բերքատվության դեպքում, իսկ շարժուն՝ բերքի համար չափազանց նպաստավոր կամ աննպաստ տարիներին։

Ելնելով այդպիսի նկատառումներից, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը որոշեց նպատակահարմար համարել սկսած 1958 թվականից վերացնել գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումները և բնավարձը, և այսուհետև պետական մթերումները կատարել գնումների կարգով։ Բայց պետությանը գյուղատնտեսական մթերքներ մատակարարելու գործին կոլտնտեսությունների մասնակցության աստիճանը ավելի ճիշտ որոշելու համար դեռևս կիրառել հացահատիկի, կարտոֆիլի, մսի, կաթի, բրդի և ձվի պետական մթերումների ծավալը ըստ հեկտարների հաշվելու սկզբունքը՝ հաշվի առնելով կոլտնտեսությունների մասնագիտացումը և դի-



ֆերենցելով կոլտնտեսությունների կողմից այդ մթերքների վաճառքի նորմաները։

Պլենումը անհրաժեշտ համարեց զիջել անցած տարիների պարտադիր հանձնումների, կոնտրակտացիաների և մեքենա-տրակտորային ու մասնագիտացված կայանների աշխատանքի դիմաց կոլտնտեսությունների վճարելիք բնավարձի ամբողջ պարտքը։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը պարտիական կազմակերպությունների, սովետական և գյուղատնտեսական օրգանների առջև խնդիր դրեց՝ բոլոր ջանքերը կենտրոնացնել կոլտնտեսություններում և սովխոզներում հողագործության և անասնաբուծության մթերքների արտադրության հետագա աճն ապահովելու վրա, հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ, շրջան, մարզ, երկրամաս և ռեսպուբլիկա անպայման կատարի գյուղատնտեսության մթերքների արտադրության ու պետությանը դրանք հանձնելու պետական պլանները։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը ջերմ հավանության արժանացավ ամբողջ սովետական ժողովրդի կողմից։

---

# ԾԱՆՐԱՔԱՐՇԱՅԻՆՆԵՐԻ ՇԱՐԺՈՒՄՆ ՈՒ ՆՐԱ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Ի. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Սովետական Միությունը երկաթուղային հզոր տերություն է։ Երկաթուղային տրանսպորտը հանդիսանում է սոցիալիստական ժողովրդական տնտեսության արյունատար զարկերակը։ Երկաթուղային տրանսպորտով է փոխադրվում ժողովրդական տնտեսության ամբողջ բեռների 85 և մարդկանց մոտ 90 տոկոսը։

Երկաթուղային տրանսպորտը մեր երկրում պարտիայի և կառավարության մեծ հոգատարության շնորհիվ հագեցվել է առաջնակարգ տեխնիկայով և այսօր լրիվ ապահովում է ժողովրդական տնտեսության պահանջները բեռների փոխադրման ասպարեզում։ Բավական է նշել, որ 1957 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, բեռնաշրջանառությունը աճել է 18 անգամ։ Այդ



տեսակետից ամբողջ աշխարհում մեր երկիրը գրավում է առաջին տեղը։ Անցյալ տարի ՍՍՌՄ երկաթուղային տրանսպորտը տեղափոխել է 1 միլիարդ 700 միլիոն ուղևոր կամ 9 անգամ ավելի, քան 1913 թվականին։

Երկաթուղային տրանսպորտը հսկայական դեր է խաղացել երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության զարգացման, ապրանքաշրջանառության ծավալման, ազգային ռեսպուբլիկաների տնտեսության և կուլտուրայի վերելքի գործում։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին երկաթուղին հանդիսացավ թիկունքի և ճակատի միջև կապի հաստատման, ռազմական բեռների ու մթերքների, մարդկային ուժերի փոխադրման կարևոր միջոց։ Հետպատերազմյան տարիներին էլ ավելի բարձրացավ երկաթուղային տրանսպորտի նշանակությունը։ Մեր փառապանծ երկաթուղայինները հաջողությամբ կատարեցին 6-րդ հնգամյակի անցած երկու տարվա փոխադրումների առաջադրանքները։

ՍՄԿԿ XX համագումարը մեծ ու պատվավոր խնդիրներ դրեց երկաթուղային տրանսպորտի առջև։ Վեցերորդ հնգամյակում երկաթուղիների բեռնաշրջանառությունը աճել է 42 տոկոսով, էլեկտրիֆիկացվելու է







Տ.100 և կառուցվելու է 6.500 կիլոմետր նոր երկաթուղագիծ։

Երկաթուղիների էլեկտրիֆիկացումը տրանսպորտի վերակառուցման և բարձրագույն տեխնիկայի բազայի վրա նրա զարգացման կարևորագույն օղակն է։ Հաշվի առնելով այդ գործի ժողովրդատնտեսական հսկայական նշանակությունը, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն որոշում է ընդունել երկաթուղիների էլեկտրիֆիկացման մասին, որը նկատի է առնված 15 տարվա համար։ Այդ պլանով նախատեսվում է էլեկտրիֆիկացնել 40 հազար կիլոմետր ընդհանուր երկարությամբ երկաթուղիներ։

Տրանսպորտը շարունակ զինվում է առաջնակարգ տեխնիկայով. վեցերորդ հնգամյակում երկաթուղիները կստանան 2.000 էլեկտրոքարշ, 2.500 մագիստրալային երկսեկցիոն ջերմաքարշ, 255 հազար ապրանքատար և 18.600 մարդատար վագոն, կավտոմատացվեն գնացքները կազմելու և վերակազմելու շատ պրոցեսներ, կզարգանա ռադիոկապը, կսկսի հեռուստատեսության կիրառումը լոկոմոտիվների վրա։ Կմեքենայացվեն աշխատատար պրոցեսները, առաջին հերթին երկաթուղագծերի վերանորոգման ու վերակառուցման, վագոնների բեռ-



նման ու բեռնաթափման աշխատանքները։ Պարտիայի համագումարը դիրեկտիվ տվեց այս հնգամյակում վագոնների շրջապտույտը արագացնել 15 տոկոսով, մեծ չափով ավելացնել լոկոմոտիվների վազքը, 17 տոկոսով իջեցնել բեռների փոխադրումների ինքնարժեքը։

Հատկապես վերջին երկու հնգամյակներում լայն զարգացում գտավ մեր ռեսպուբլիկայի երկաթուղին։ Նախկին փոքր, սակավազոր շոգեքարշերը փոխարինված են հզոր լոկոմոտիվներով։ Այժմ Լենինական—Սանահին տեղամասում՝ Լոռվա գեղատեսիլ ձորերով սլանում են մեծ Լենինի անունը կրող «ՎԼ—22» սերիայի հզոր էլեկտրաքարշեր։

Երկաթուղային տրանսպորտում ծնունդ են առնում հայրենասիրական նորանոր նախաձեռնություններ և աշխատանքի առաջավոր եղանակներ, որոնք ուղղված են ավելի շատ բեռներ փոխադրելու, վագոնների շրջապտույտն էլ ավելի արագացնելու, լոկոմոտիվների կարողությունը լրիվ օգտագործելու նպատակին։ Այդ նախաձեռնություններից մեկը ծանրաքարշ գնացքներ վարելու շարժումն է, որն ունի պետական խոշոր նշանակություն։

Փաստերը ցույց են տալիս, որ ծանրա-

քարշայինների շարժումը մեծ չափով բարձրացնում է երկաթուղային տրանսպորտի թողունակությունը, ավելացնում շահութաբերությունը, իջեցնում բեռների փոխադրումների ինքնարժեքը։ Այսպես, եթե 1953 թվականին երկրի առաջավոր լոկոմոտիվայինները վարել են մեկ միլիոն 111 հազար ծանրաքարշ գնացք, որոնցով պլանից դուրս փոխադրվել է 850 միլիոն տոննա բեռ, ապա 1957 թվականին նրանք երկու միլիոն 900 հազար ծանրաքարշ գնացքներով պլանից դուրս փոխադրել են մեկ միլիարդ 100 միլիոն տոննա բեռ։ Հաշվումները ցույց են տալիս, որ ՍՍՌՄ երկաթուղային տրանսպորտում բեռնատար գնացքների միջին քաշը ավելացնելով 100 տոննայով, դրանցից տարեկան ստացվում է մեկ միլիոն 250 հազար տոննա վառելանյութի տնտեսում։ Այսպիսով միայն 1957 թվականին ծանրաքարշ գնացքներ վարելուց երկաթուղային տրանսպորտը ստացել է ավելի քան 600 միլիոն ռուբլու շահույթ, բացի այն, որ մեծ չափով արագացվել է բեռնաշրջանառությունը և վագոնների շրջապտույտը։

Ծանրաքարշայինների շարժման մեջ ներգրավվեցին նաև մեր ռեսպուբլիկայի լոկոմոտիվայինները։ Երևանի, Լենինականի և Սա-



նահինի շոգեքարշային ու էլեկտրաքարշային դեպոներում չկա բեռնատար գնացքի մի մեքենավար, որ չվարի ծանրաքարշ գնացք։ Աշխատելով երկրի առաջավոր մեքենավարների օրինակով, Երևանի երկաթուղային բաժանմունքի շոգեքարշայիններն ու էլեկտրաքարշայինները քիչ թվով լոկոմոտիվներով ավելի շատ բեռներ փոխադրելու ուղղությամբ հասել են լուրջ հաջողությունների։

Այդ առթիվ բնորոշ է բերել հայրենասիրական նախաձեռնության մի օրինակ։ Բեռնատար գնացքը իր լրիվ քաշով կանգ առավ Նորաշեն կայարանում։ Դա եղբայրական Ադրբեջանի երկաթուղային ճանապարհի վերջին կայարանն է, որտեղից գնացքները հանձնվում են Երևանի երկաթուղային բաժանմունքին։ Այստեղից էլ սկսվում է Երևանի դեպոյի շոգեքարշայինների աշխատանքային առօրյան։

— Կայարանում բեռնված վագոնների կուտակում է առաջացել,— դիմեց մեքենավար Լ. Ստեփանյանին Նորաշեն կայարանի հերթապահ Ջ. Ալիևը,— դրանք ուղարկվելու են Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների հասցեով։ Ձե՞ք առարկի, եթե գնացքի կազմը պատրաստվի նորմայից ավելի քաշով։

Մեքենավարը համաձայնվեց։ Նա մեկ երթի սոցիալիստական մրցության մեջ մտավ բաժանմունքի գնացքային դիսպետչեր Պետրոս Իսկանդարյանի հետ ծանրաքարշը ժամանակին տեղ հասցնելու համար։

Մինչև Զ. Ալիևի ղեկավարած հերթափոխը կպատրաստեր գնացքակազմը, մեքենավար Լ. Ստեփանյանը իր օգնական Ռ. Հունանյանի հետ միասին մի անգամ ևս ստուգեց ու կարգի բերեց շոգեքարշը, յուղեց իրար շփվող մասերն ու մասնիկները։

Գնացքակազմը պատրաստ էր։ Լսվեց շոգեքարշի ուժեղ սուլոցը և գնացքը տեղից շարժվեց։ Նորման 1.400 տոննայով գերազանցող գնացքը սլանում էր Արարատյան դաշտավայրով։ Գնացքային դիսպետչեր Պ. Իսկանդարյանը «Կանաչ փողոց» էր բաց արել գնացքի առջև և կայարաններն անցնում էր առանց կանգառի։

Գնացքը տեղ հասցվեց ժամանակին, ըստ չվացուցակի։ Մեքենավարի ու նրա օգնականի դեմքերին նկատվում էր հաղթանակի ժպիտը։ Նրանք պատվով կատարեցին իրենց խոստումը։

— Այսպիսի երկար գնացքը կարելի էր բաժանել երկու մասի և տեղ հասցնել երկու



շոգեքարշով,— ասում էին Մասիս կայարանի մի խումբ երկաթուղայիններ։

— Զարմանալու ոչինչ չկա,— միջամտում է կայարանապետ Հ. Սարգսյանը,— Մեքենավարը Լ. Ստեփանյանն է։ Նրա համար դժվարը տեղից շարժվելն է, այնուհետև ամեն ինչ կարգին կընթանա։

Երևանի դեպոյի մեքենավար Լ. Ստեփանյանը, նրա օգնական Ռ. Հունանյանը գերազանցեցին Նորաշեն—Մասիս տեղամասում մինչև հիմա վարած գնացքների քաշի նորման, սահմանեցին աշխատանքային բարձր ռեկորդ։ Միայն այդ մեկ երթից նրանք տնտեսեցին 904 կիլոգրամ վառելանյութ, ազատվեց մեկ շոգեքարշ, մեծ չափով կրճատվեց վագոնների պարապուրդը և արագացվեց բեռների փոխադրումը։ Ծանրաքարշ գնացք վարելու բարձր ռեկորդ սահմանեց նաև մեքենավար Ա. Կարապետյանը։ Հետևելով Լ. Ստեփանյանի օրինակին, նա մի բեռնատար գնացք տեղ հասցրեց ժամանակին, որի քաշի նորման գերազանցում էր 951 տոննայով։ Նրանք այդ հաջողություններին հասան շոգեքարշի գոլորշին ճիշտ օգտագործելու, շարժական մասերը լավ վիճակում պահելու, շոգեքարշի կարողությունը

լրիվ օգտագործելու և այլ եղանակների միջոցով։

Մանրաքարշ շատ գնացքներ են վարել նաև Լենինականի էլեկտրաքարշային դեպոյի մեքենավարները։

1957 թվականի ընթացքում բաժանմունքի շոգեքարշայիններն ու էլեկտրաքարշայինները վարել են 4.300 ծանրաքարշ գնացք, որոնցով պլանից դուրս փոխադրել են 682 հազար տոննա ժողովրդա-տնտեսական բեռներ։ Դրա շնորհիվ 12,2 տոկոսով իջավ բեռների փոխադրումների ինքնարժեքը, բաժանմունքը ստացավ մի քանի հարյուր հազար ռուբլի շահույթ։

Տարեցտարի ծանրաքարշայինների շարժումը լայն ծավալ է ստանում։ Այսպես, միայն այս տարվա հինգ ամսում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ Երևանի երկաթուղային բաժանմունքի շոգեքարշայիններն ու էլեկտրաքարշայինները վարել են 979 ծանրաքարշ գնացք ավելի և պլանից դուրս փախադրել 870 հազար տոննա բեռ։ Երևանի շոգեքարշայինները, ընթացիկ տարվա անցած հինգ ամսում պլանից դուրս փոխադրելով 128 հազար տոննա բեռ, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի 88 հազար տոննայի դի-



մաց, տնտեսել են մոտ 300 տոննա վառելանյութ, որի շնորհիվ դեպոն ստացավ 400 հազար ռուբլի շահույթ։ Այդ փառավոր շարժման մեջ ընդգրկված են ոչ միայն շոգեքարշայիններն ու էլեկտրաքարշայինները, այլև վագոնայինները, գծայինները, կայարանների աշխատողները, կոնդուկտորական բրիգադաներն ու տրանսպորտի մյուս պրոֆեսիայի աշխատողները։

Սովետական Միության տրանսպորտայինների առաջավոր ջոկատներից մեկը հանդիսացող մեր ռեսպուբլիկայի երկաթուղայինները արմատավորելով առաջավոր մեթոդները և օրեցօր բարելավելով իրենց աշխատանքը, երկաթուղայինի համամիութենական օրը՝ օգոստոսի 3-ը կդիմավորեն արժանավայել, պատվով կկատարեն իրենց պարտքը հարազատ Հայրենիքի հանդեպ։

---

## ՔԻՄԻԱՆ ԾԱՌԱՅՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆԸ

*«ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՐԱԳ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՊԵՏՔ Է ԴԱՌՆԱ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՈՐԾ»*

*(ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումից)*

### ԱՎԵԼԻ ԱՄՈՒՐ ՔԱՆ ՊՈՂՊԱՏԸ

Նեյլոնի թելերից պատրաստած բարակ պարանը իր ամրությամբ ոչնչով չի զիջում պողպատե ճոպանին, միաժամանակ նա վերջինից զգալիորեն թեթև է։ Նեյլոնե պարանները մեծ ճկունություն ունեն։ Դրանք ցնցումներից չեն վախենում և իրենց լավ են դրսևորում փոթորիկների ժամանակ նավերը բեռնելիս։ Սինթետիկ թելերից պատրաստած պարաններն օգտագործում են նաև սովետական կետորսները։ Այդ հանգամանքի շնորհիվ զգալիորեն բարձրացել է հարպունային թնդանոթի կրակոցի հեռաձգությունն ու դիպուկությունը։



### ԱՎՏՈՄՈԲԻԼԸ ԹԵԹԵՎ Է ԴԱՌՆԵԼ

Ներկայումս Մոսկվայի փողոցներում կարելի է հանդիպել սիգարաձև, երկտեղանի արագընթաց ավտոմոբիլի, որը պատրաստված է մայրաքաղաքի ավտոգործարանում։ Մեքենայի թափքը պատրաստված է պլաստմասսաներից, որոնք ամրացված են ապակյա թելերով։ Ավտոմոբիլային արդյունաբերության մեջ պլաստմասսայի կիրառումը մոտավորապես 20—25 տոկոսով կրճատում է պողպատի ծախսումը և տասնյակ կիլոգրամներով թեթևացնում մեքենայի քաշը։

### ՁՄՊԱՆԱԿՆԵՐ ՁՅՈՒԹԻՑ

Պլաստմասսայից զսպանակները պատրաստում են սինթետիկ ձյութերից, որոնք ամրացված են ապակյա թելերով։ Այդ զսպանակները շատ լավ գործում են մինուս 20-ից մինչև պլյուս 70 աստիճան ջերմության շրջանակում։ Իրենց ամրությամբ ու դիմացկունությամբ այդ զսպանակները չեն զիջում պողպատին։

### ԹԱՓԱՆՑԻԿ ԳՈՐԾԻՔ

Բարդ վիրահատությունների ժամանակ, հատկապես այնպիսի օրգանների ինչպիսիք ուղեղն ու սիրտն են, չափազանց կարևոր է սրպեսզի վիրաբուժի գործիքը չանդրադարձ-

նի լույսը, այսինքն այն թափանցիկ լինի։ Այդպիսի գործիք պատրաստվում է պլաստմասսայից։ Մնացած իր բոլոր հատկություններով դա ոչնչով չի տարբերվում այն գործիքից, որը պատրաստվում է հատուկ մարկայի ամենալավ պողպատից։

### ԽՑԱՆԻՑ ԹԵԹԵՎ

Փրփրացնելու միջոցով պլաստմասսաները կարելի է դարձնել խիստ թեթև, ծակոտկեն մի նյութ, որի հավասարը չկա բնության մեջ։ Փրփուր դարձած պլաստմասսաների որոշ տեսակներ 50—100 անգամ թեթև են ջրից և 15—30 անգամ՝ խցանից։ Այսպիսի փրփրապլաստմասսաներ օգտագործում են «Հյուսիսային բևեռ» դրեյֆող գիտական կայանի աշխատողների համար տներ կառուցելու նպատակով։

### ԲՈՒԺԻՉ ՍՊԻՏԱԿԵՂԵՆ

«Քլորին» սինթետիկ թելը ածխի և կրի սինթեզման արդյունք է։ «Քլորինից» պատրաստած սպիտակեղենը օգնում է բուժելու ռադիկուլիտ, պոդագրա և հոդացավ հիվանդությունները։ Այդպիսի սպիտակեղենի արտադրությունը յուրացված է Ռոստգլավտրիկոտաժ ֆաբրիկայում։



### ԳՈՆԴ ԲԵՆԶԻՆ

Պլաստմասսայից պատրաստում են հատուկ «աղյուսիկներ», որոնք իրենց մեջ պարունակում են 95 տոկոս մաքուր բենզին։ Այդ բենզինը գտնվում է պլաստմասսայի մեջ փոքրիկ պղպջակների ձևով։ «Աղյուսիկների» պատերը չափազանց բարակ են։ Այդպիսի փականքի մեջ բենզինը կարելի է պահել բացօթյա, այրող արևի տակ, սառնամանիքի և ջրի մեջ։ Գործածելուց առաջ բենզինը «աղյուսիկից» քամում են այնպես, ինչպես ջուրը սպունգից։

### ԿԱՊԱՐԻ ՓՈԽԱՐԵՆ

Պլաստմասսայից պատրաստած տպագրական տառը փորձարկված է Մոսկվայի տպարաններում։ Այդպիսի տառը կապարե տառից ավելի երկարակյաց է (սովորական տառատեսակի 40 հազարի փոխարեն, նա դիմանում է 150 հազար տպաթերթի) և միանգամայն անվտանգ է գրաշարների համար։ Այդ բոլորի հետ միասին նա 2 անգամ էժան և 10 անգամ թեթև է կապարի տառից։

### ՊԼԱՍՏՄԱՍՍԱՆ ՕԴՈՒՄ

Ավիացիայի կողմից ձայնի տարածման արագությունների տիրապետումը բազմա-

թիվ նոր պահանջներ է առաջադրում տեխնիկային։ Այսպես, օրինակ, մեծ արագությունների դեպքում բազմաշերտ ապակիների մեջ սովորական շերտաթերթերը տաքությունից փափկանում են։ Ահա այս խնդրին նոր լուծում է տալիս քիմիան։ Ստեղծված են պլաստմասսաների նոր տեսակներ, որոնք դիմանում են ամենաբարձր ջերմաստիճանի։ Դրանցից մի քանիսը իրենց ամրությունը պահպանում են մինուս 50-ից մինչև պլյուս 170 և նույնիսկ ավելի բարձր ջերմաստիճանում։

### ԽՈՂՈՎԱԿՆԵՐ ԱՌԱՆՑ ԶՈԴՄԱՆ

Անընդհատ սեղմման միջոցով պոլիեթիլենից պատրաստում են ջրատար խողովակներ։ Այդպիսի խողովակներ «սեղմող» մեքենան կարելի է տեղադրել տրակտորի վրա, որպեսզի այդ նույն տրակտորը ջրատար խողովակները իրար հետևից դնի խրամատի մեջ։ Տարբեր տեսակի պլաստմասսայից պատրաստած խողովակները քայքայումից չեն վախենում։ Դրանց միջով կարելի է մղել թթուներ և ալկալիական աղեր, քացախ և սպիրտ, կաթ և նավթային գազ։ Լինելով որպես լավ մեկուսիչներ, դրանք ենթակա չեն



գետնի մեջ թափառող էլեկտրական հոսանքների կործանիչ ազդեցությանը։

### ՉՍԱՌՉՈՂ ԱՊԱԿԻ

Ավտովարորդի դիմաց գտնվող ապակին ձմեռ ժամանակ պատվում է սառույցով, իսկ ամռանը անձրևային եղանակին՝ բարակ ջրաշերտով և այդպիսով դժվարացնում ապակու միջից ավտովարորդի տեսանելիությունը։ Եթե այդպիսի ապակին ծածկենք կրեմնա-օրգանական լաքով, անձրևի կաթիլները և սառցի բյուրեղները չեն կարող կպչել ապակուն և թեթևակի կուռչեն օդի հանդիպակաց հոսանքից։ Այդպիսով ապակին միշտ թափանցիկ կմնա։

### ՍՈՍԻՆՁՈՎ ՄԻԱՑՎԱԾ ԿԱՄՈՒՐՋ

Արդյունաբերության զանազան ճյուղերի մեջ լայն կիրառություն են գտնում սինթետիկ սոսինձները։ Դրանց օգնությամբ հուսալի կերպով միացվում են ոչ միայն փայտը, ապակին, այլև մետաղները։ Վերջերս Բռնո քաղաքում (Չեխոսլովակիա) ցուցահանդեսում ներկայացված է 10 մետր երկարություն ունեցող մի մետաղյա կամուրջի մոդել, որի վրա ոչ մի զոդում կամ գամվածք չի կատարվել։ Բոլոր մետաղյա մա-

ները միմյանց հետ միացվել են սինթետիկ սոսինձի օգնությամբ։ Կամուրջը դիմացել է մի պատկառելի ճնշման՝ յուրաքանչյուր քառակուսի սանտիմետրի վրա ընկնող կես տոննա ծանրության։

ԵՐԿԱՐԱԴԻՄԱՑԿՈՒՆ ԱՎՏՈԴՈՂԵՐ

Սովորական մարդատար ավտոմեքենաների դողերի վազքի տևողությունը 30—40 հազար կիլոմետրից չի անցնում։ Քիմիկոսները ներկայումս ստեղծում են այնպիսի սինթետիկ կաուչուկներ, որոնք երկար ժամանակ չեն մաշվում։ Մի շարք նոր տեսակի սինթետիկ կաուչուկից պատրաստած դողերը աշխատանքի ընթացքում ավելի երկար են դիմանում և միջին հաշվով 80—120 հազար կիլոմետր վազք են կատարում։

ՆԱՎԵՐ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ

Թերթավոր պլաստիկաներն օգտագործվում են նավաշինության մեջ։ Հատուկ ձևերի մեջ «ձուլվում» է մի ամբողջ նավակ։ Այդպիսի նավակը շատ թեթև է, ներկում չի պահանջում և ծովային ջրի քայքայումից չի վախենում։

---



# ԼԻԲԱՆԱՆԻ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Մերձավոր Արևելքում նորից են կիտվում պատերազմի ահավոր ամպերը։ Այս անգամ իմպերիալիստներն իրենց ագրեսիայի համար օբյեկտ են ընտրել Արաբական Արևելքի փոքրիկ երկրներից մեկը՝ Լիբանանը։

Լիբանանը բուրժուա-պառլամենտական ռեսպուբլիկա է։ Այն գտնվում է Առաջավոր Ասիայում, Միջերկրական ծովի արևելյան ափին։ Լիբանանը հյուսիսից և արևելքից սահմանակցում է Միացյալ Արաբական Ռեսպուբլիկային, հյուսիսից՝ Իսրայելի պետությանը, իսկ նրա ամբողջ արևմտյան ափերը ողողում են Միջերկրական ծովի ջրերը։

Լիբանանի տերիտորիան հավասար է 10 հազար 400 քառակուսի կիլոմետրի։ Դա մոտ երեք անգամ փոքր է մեր ռեսպուբլիկայից։ Լիբանանում ապրում են մոտ մեկ

և կես միլիոն մարդ։ Բնակչության հիմնական զանգվածը՝ արաբներ են։ Բացի նրանցից, այնտեղ ապրում են նաև հայեր, հույներ, թուրքեր և այլն։

Բնակչության մեծ մասը կենտրոնացված է մերձծովափնյա հարթավայրերում և Բեքաայի դաշտավայրում։ Բնակչության մոտ երկու երրորդը ապրում է գյուղում և զբաղվում գյուղատնտեսությամբ։

Լիբանանի խոշոր քաղաքներից են Բեյրութը (մայրաքաղաք), Տրիպոլին, Սայդան և այլն։

Իմպերիալիստների երկարամյա տիրապետության և ֆեոդալական մնացուկների պահպանման հետևանքով Լիբանանը այժմ իրենից ներկայացնում է մի ետամնաց ագրարային երկիր, որտեղ գերակշռում է կալվածատիրական հողատիրությունը։ Գյուղատնտեսության հիմնական ճյուղերն են անասնաբուծությունը և շերամապահությունը։ Լիբանանում ծանր արդյունաբերություն համարյա չկա, որոշ զարգացում են ապրել թեթև արդյունաբերության առանձին ճյուղեր։ Կան սննդի, ցեմենտի, նավթաթորման արդյունաբերության առանձին ձեռնարկություններ։ Երկրում կապիտալ ներդրումների



գերակշռող մասը պատկանում է ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի մոնոպոլիաներին։

Լիբանանի տերիտորիայում են վերջանում Մերձավոր Արևելքի խոշորագույն նավթամուղները։ Լիբանանի Սայդա նավահանգստում վերջանում է ամերիկյան նավթային մագնատներին պատկանող տրանսարաբական նավթամուղը, որը գալիս է Սաուդական Արաբիայից, իսկ Տրիպոլիում՝ անգլիական մոնոպոլիաներին պատկանող նավթամուղը, որը գալիս է Իրաքից։ Այդ նավթամուղներով արևմտյան տերությունների մոնոպոլիստները ամեն տարի մղում են ավելի քան 30 միլիոն տոննա նավթ։

ԱՄՆ-ի և Անգլիայի ռազմական հրամանատարությունը խոշոր նշանակություն է տալիս Լիբանանի ստրատեգիական դիրքին, որպես միջերկրական ծովի արևելյան ափին գտնվող բանալու, որը պետք է ծառայի արաբական երկրների միասնության քայքայման իմպերիալիստական նպատակներին։

Լիբանանի վերջին դեպքերը, որոնք ըսկըսվեցին մայիսի սկզբներին և շարունակվում են մինչև այժմ, հանդիսացան ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստական շրջանների ագրեսիվ մտադրությունների իրականացման, ինչպես նաև Լիբանանի կառավարող-

ների բացահայտ դավաճանական գործողությունների ուղղակի հետևանքը։ Ինչպես հայտնի է, դեռևս 1957 թվականի գարնանը Լիբանանի կառավարությունը շտապողականություն ցուցաբերեց, միանալով տխրահռչակ «Դալես—Էյզենհաուերի դոկտրինային» և դրանով իսկ իրեն կապեց Մերձավոր և Միջին Արևելքում ԱՄՆ-ի և Անգլիայի ագրեսիվ մտադրություններին։ Լիբանանի կառավարության թողտվությամբ երկրում ակտիվ գործողություններ ծավալեցին ԱՄՆ-ի, Անգլիայի իմպերիալիստների և Բաղդադի պակտին հարող երկրների քայքայիչ կազմակերպությունները։ Լիբանանի տերիտորիայում ապաստարան գտան Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի թշնամիները, որոնք ձեռնամուխ եղան Մերձավոր և Միջին Արևելքի երկրների անկախության դեմ բացահայտ դավադրություններ նախապատրաստելու գործին։

Այսպիսով, իմպերիալիստների հետ գործարքի մեջ մտնելով, Լիբանանի կառավարությունը հրաժարվեց չեզոքության և ագրեսիվ ռազմական բլոկներին չմասնակցելու քաղաքականությունից, որին հետևում է արաբական պետությունների մեծամասնությունը։ Նա սկսեց այնպիսի քաղաքականու-



թյուն վարել, որը հիմնովին հակասում է Բանդունգի կոնֆերանսի որոշումներին, որոնց մասնակից է եղել նաև Լիբանանը։ Լիբանանի կառավարողների այդ դավաճանական քաղաքականությունը հասցրեց արաբական մյուս երկրներից Լիբանանի մեկուսացմանը, որը շատ հարմար էր իմպերիալիստական պետությունների կառավարող շրջանների համար։

Բնականաբար, այդպիսի քաղաքականությունը լուրջ վնաս հասցրեց Լիբանանի ժողովրդի ազգային շահերին, ժողովուրդ, որը մշտապես ձգտում է բարեկամական հարաբերությունների մեջ լինել արաբական երկրների եղբայրական ժողովուրդների հետ։

Ահա թե ինչու վերջին ժամանակներս Լիբանանում արագորեն էր աճում ժողովրդական զանգվածների խորը դժգոհությունը։ Բնակչության բոլոր խավերը, անկախ նրանց կրոնական պատկանելիությունից, ոտքի կանգնեցին ռեակցիային հակահարված տալու համար։ Իրադարձությունները այնպիսի լարվածության հասան, որ ներկայումս երկրի զգալի մասում կառավարությունը չի հանդիսանում դրության տերը։

Լիբանանի ժողովուրդը համառ պայքար է մղում իր անկախության համար։ Մի շարք

տեղերում ապստամբները պայթեցրել են կամուրջները, երկաթգծերը և հեռախոսային լարերը։ Երկրի տնտեսական կյանքը լրիվ կանգ է առել։

Հակակառավարական, հակաիմպերիալիստական շարժումը Լիբանանում այնքան ուժեղ գտնվեց, որ դեմոկրատական ուժերը ջախջախելու բոլոր փորձերը ձախողվեցին։

Ապստամբները հաստատուն կերպով պահպանում են իրենց գրաված դիրքերը։ Նրանք վերահսկում են Լիբանանի հյուսիսը, այդ թվում նաև երկրի՝ իր մեծությամբ երկրորդ քաղաքը՝ Տրիպոլին։ Այստեղ իշխանությունը իրականացվում է ժողովրդական կոմիտեի կողմից։

Վերջին ժամանակներս մարտերի կենտրոն էր դարձել Բեյրութը։ Քաղաքի կենտրոնում լուրջ ընդհարումներ տեղի ունեցան։ Ժողովրդական ուժերին հաջողվեց տիրել մի շարք կառավարական հիմնարկների, կենտրոնական բանտին, խափանել շարժումը Բեյրութից աերոդրոմ տանող ճանապարհի վրա։ Լիբանանի մայրաքաղաքի շատ թաղամասերում առաջվա պես բարիկադներ են կանգնեցված։ Չեն աշխատում Բեյրութի նավահանգիստը, ֆաբրիկաներն ու խանութները։



Պայքարի ելած Լիբանանի ժողովուրդը պահանջում է դադարեցնել օտարերկրյա միջամտությունը երկրի ներքին գործերին։ Ժողովրդական զանգվածները հանդես են գալիս այնպիսի արտաքին և ներքին քաղաքականություն անցկացնելու օգտին, որը համապատասխաներ ազգային շահերին, բնակչության բոլոր խավերի կամքն արտահայտող կառավարություն ստեղծելու օգտին, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի հետ բարեկամական հարաբերությունները վերականգնելու և ռազմական բլոկներին չմասնակցելու օգտին։

Չնայած Լիբանանի ժողովրդի այդ օրինական պահանջներին, երկրի կաշառված կառավարողները համառորեն հրաժարվում են դրանք կենսագործել։ Լիբանանի ռեակցիան կատարելով անդրօվկիանոսյան տերերի առաջադրանքները, արյունալի պատերազմ է մղում իր ժողովրդի դեմ։ Գործադրվում են ԱՄՆ-ից բերված տանկերը, ռեակտիվ ինքնաթիռները, ծանր հրետանին և զրահապատ մեքենաները։ Ապստամբների դեմ մղվող ռազմական գործողություններում մասնակցում են իրաքյան և հորդանանյան սպաներն ու զինվորները, որոնք Լիբանան են եկել Բաղդադի պակտի ա-

րեվմտյան ղեկավարների կարգադրությամբ։ Կառավարական ավիացիան ամբողջ երկրով մեկ շարունակում է անխնա կերպով ռմբակոծության և գնդակոծության ենթարկել ապստամբների ջոկատները։

Դեպքերի զարգացումը Լիբանանում ցույց է տալիս, որ Լիբանանի ժողովրդի դեմ գոյություն ունի ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստների կողմից մտածված ինտերվենցիայի պլան։ Սակայն լայն հասարակական կարծիքից վախենալով, արևմտյան տերությունների իմպերիալիստները փորձում են իրենց գործողություններն արդարացնել այնպիսի կեղծ պատրվակներով, իբր թե Լիբանանում տեղի ունեցող բնակչության մասսայական ելույթները հրահրված են Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի կողմից։

Իմպերիալիստական տերությունները տեսնելով, որ Լիբանանում պայքարող ուժերի հարաբերակցությունը դասավորվել է ի վնաս իրենց մտադրությունների իրականացման, անցան այդ երկրի դեմ զինված ինտերվենցիայի ուղղակի նախապատրաստմանը։ Այդ նպատակով ԱՄՆ-ը կազմ ու պատրաստ է պահում ամերիկյան ռազմածովային 6-րդ նավատորմի ռազմանավերը, որոնք գտնվում են Միջերկրական ծովի արևելյան մասում։



Անգլիական հրամանատարությունը Կիպրոս է ուղարկել, պարաշյուտային զորքեր։ ԱՄՆ-ի և Անգլիայի հրամանատարությունների միջև պայմանավորվածություն է կայացել նույնիսկ այն բանի մասին, որպեսզի ամերիկյան ինքնաթիռները օգտվեն Կիպրոսում գտնվող անգլիական ավիաբազայից։

Իմպերիալիստների գործողությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ պատերազմի սպառնալիքը կախվել է ոչ միայն Լիբանանի վրա, այլև Մերձավոր և Միջին Արևելքի մյուս երկրների վրա։ Լիբանանում տեղի ունեցող պայքարը՝ դա արաբական ժողովուրդների ազատագրական պայքարի մի մասն է ընդդեմ գաղութարարության բոլոր և ամեն տեսակի դրսևորումների։ Այդ պայքարի մեջ են ներգրավվել միլիոնավոր արաբ հայրենասերներ՝ սկսած Ալժիրից մինչև Օման։

Լիբանանի իրադարձությունները հուզում են ամբողջ համաշխարհային հասարակայնությանը, որի համակրանքը ամբողջովին այն ժողովրդի կողմն է, որը պայքարում է իր ազատության, հայրենի երկրի տերը լինելու իրավունքի համար։

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# ԵՐԲ ՎՐԱ Է ՀԱՍՆՈՒՄ ՍԵՎ ՕՐԸ

## (Ամերիկյան մամուլի էջերից)

Ամերիկյան Դետրոյտ քաղաքի արևելյան մասում ապրում է մի հասարակ բանվորական ընտանիք՝ Ջոնը, Ջանետը և նրանց փոքրահասակ որդին։ Ջոնը տասնմեկ տարի աշխատում էր «Կրայսլեր» ավտոմոբիլային կոմպանիայի գործարաններից մեկում։ Նրա կինը նույնպես աշխատում էր ավտոգործարանում։ Իրենց ստացած աշխատավարձով նրանք կարողանում էին ծայրը ծայրին հասցնել և կանոնավոր կերպով վճարել բնակարանի վարձը և մաս-մաս վճարելու պայմանով վերցրած կահույքի պարտքը։

Անցյալ տարվա սեպտեմբերին Ջանետը զրկվեց աշխատանքից։ Այդ դեպքը նրա համար կարծես պարզ երկնքից շանթի հարված լիներ։ Չէ՞ որ մինչև այժմ երիտասարդ բանվորուհին վստահությամբ էր ընդունում ամերիկյան էկոնոմիկայի «հավիտյան ծաղկման» վերաբերյալ բուրժուական պրոպագանդայի հեքիաթները։



Ծննդյան տոներից երեք շաբաթ անց, այդ ընտանիքին մի նոր փորձանք պատահեց՝ ավտոգործարանից ազատեցին Ջոնին։ Առայժմ նա գործազրկության համար ժամանակավոր նպաստ է ստանում, որով հնարավոր է միայն կիսաաղքատիկ գոյություն պահպանել։ Բայց չէ՞ որ հենց այդ գրոշներից դեռ պետք է պարտք վճարել, այլապես ընտանիքը կզրկվի այն կահույքից, որը վերցված է ապառիկ։ Այսպես մեկ ընտանիք ևս «ծաղկող» Ամերիկայում իմացավ, թե ինչ է նշանակում սովը։ Ջանետը սարսափում է նույնիսկ մտածել, թե ինչ է սպասում իրենց ընտանիքին վաղը։ Արդեն մի քանի օրից հետո Ջոնն այլևս նպաստ չի ստանալու գործազրկության համար...

Այս տիպիկ պատմության մասին գրում է «Նյու-Յորք Հերլադ տրիբյուն» թերթի թղթակից Ջոզեֆ Օլսոպը։ Բայց լինում են ավելի վատ պատմություններ։ Այդ նույն ժուռնալիստը եղել էր մի երիտասարդ ավտոմոբիլաշինարար բանվորի տանը։ Այդ բանվորն արդեն ճաշակել էր գործազրկության դառն բաժակը։ Ազատումից քիչ առաջ նա ամուսնացել էր և ապառքով գնել տնային գործածության իրեր։ Շուտով նա զրկվում է գործազրկության համար տրվող նպաստից։

խանութը ետ է վերցնում բանվորի գնած իրերը։ «Այդ ընտանիքի ամբողջ խղճուկ փոքրիկ բնակարանը հիշեցնում է ավերակները,— գրում է Օլսոպը,— Ապրելու ոչ մի միջոց չկա։ Իսկ այդ բանվորի կինը երեխայի է սպասում։ Ի՞նչ անել այսուհետև»։

Սրանք միայն երկու էպիզոդներ են ամերիկյան գործազուրկների կյանքից։ Բայց իրենց զրկանքների և տառապանքների մասին դեռ որքան կարող էին պատմել վեց միլիոն գործազուրկ ամերիկացիները, որոնք այսօր թափառում են քաղաքների փողոցներում վաստակ փնտրելու հույսով։ Վեց միլիոն ընչազուրկ մարդիկ։ Եվ նրանցից յուրաքանչյուրն ունի իր մեծ մարդկային վիշտը, իր տանջանքներն ու տագնապները։ Տնտեսական ճգնաժամը, որով բռնկվել է կապիտալիզմի գլխավոր երկիրը, սպառնագին ծեծում է միլիոնավոր ամերիկյան տների դռները։

Գործազրկությունը վարակի պես մեկը մյուսի ետևից վնասում է արդյունաբերության ամբողջ ճյուղեր, տարածվում երկրի նորանոր շրջաններ։ Եվ Վաշինգտոնի ղեկավար գործիչները ապարդյուն կերպով փորձելով հանգստացնել աշխատավորներին, հայտարարում են, թե ԱՄՆ-ում ճգնաժամն իբր թե արդեն «հիմնականում խեղդվել է»։ Նույ-



նիսկ պաշտոնական տվյալներն են հերքում այդ կեղծ հայտարարությունները։ Մայիսի 28-ին, ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրությունը մի զեկուցում հրապարակեց երկրում զբաղվածության մասին։ Զեկուցումից երևում է, որ գործազրկության աճը շարունակվում է։ Աղետի մեջ ընկած շրջանների թիվը (որտեղ բանվորական ուժի տասներկու և ավելի տոկոսը աշխատանք չունի) մայիս ամսվա ընթացքում աճել է 7-ից մինչև 15-ի։ Առավել ուժեղ գործազրկություն է նկատվում ավտոմոբիլային արդյունաբերության շրջաններում Միչիգանի և Ինդիանայի նահանգներում, պողպատաձուլական արդյունաբերության շրջաններում՝ Օհայոյի, Արևմտյան Վիրգինիայի նահանգներում և այլն։ Հունիսի 5-ին, ԱՄՆ-ի կոնգրեսի Միացյալ տնտեսական հանձնաժողովը կանխագուշակեց, որ 1959 թվականի առաջին եռամսյակում գործազրկությունը երկրում, հնարավոր է, որ կհասնի մինչև 7 միլիոն մարդու։

Աշխատանք գտնելու հույսը կորցրած որոշ մարդիկ հուսահատվելով, դիմում են տալիս գինվորական ծառայության գնալու համար։ Զափազանց հատկանշական է, որ «Ուոլստրիտ Ջորնել» թերթի հաղորդման համաձայն, ամենից շատ այդպիսի դիմումներ են

գրում այն քաղաքներում, որտեղ գործազրկությունն առավել ուժեղ է։ Միլիտարիստները, թնդանոթի միս մթերողները պատրաստվում են իրենց նպատակների համար օգտագործելու աշխատավորների թշվառ վիճակը։ Ինչպես հաղորդեց ամերիկյան ռազմական տեսչության աշխատակիցներից մեկը, «մեր ներկայացուցիչները, որոնք զբաղվում են բանակի հավաքագրման գործով, հայտարարում են, որ անկումը (այսպես են ամերիկյան պրոպագանդիստներն անվանում տնտեսական ճգնաժամը։— Ա.Վ.) անտարակույս, բարենպաստ ֆակտոր է հանդիսանում բանակի համար»։ Թերևս, միայն ամերիկյան զինվորականության ներկայացուցիչը կարող էր հանդես գալ այդպիսի ցինիկ հայտարարությամբ։

Ի՞նչ է մնում անելու ամերիկյան գործազուրկների մեծամասնությանը։ Աղքատիկ կյանք վարել, կիսաքաղց գոյությունը պահպանել,— այդ է նրանց բաժինը։

Ամերիկյան բուրժուական մամուլը շատ է գրում գործազրկության համար տրվող նպաստների մասին։ Մի քանի ռեակցիոն թերթեր փորձում են այդ նպաստների վճարումը պատկերել որպես բուրժուական պետության



«հոգատարության»՝ գործազուրկների նկատմամբ։

Բուրժուական վարձու գրչակները լռում են այն մասին, որ ամերիկյան բանվոր դասակարգն այդ զիջումը ձեռք է բերել շատ տարիների համառ դասակարգային պայքարի ընթացքում։ Այդ նպաստները՝ չնչին փշրանքներն են հեքիաթային այն շահույթների նկատմամբ, որոնք քաղում են մոնոպոլիստները, շահագործելով աշխատավորներին։

Գործազրկության համար նպաստները վճարվում են ժամանակավորապես։ Նահանգների մեծ մասում դրանք տրվում են 26 շաբաթյա ժամկետի համար։ Այս տարվա առաջին չորս ամիսների ընթացքում 713 հազար ամերիկյան գործազուրկներ զրկվեցին նպաստից։

Այսպիսին են գործազրկության համար տրվող նպաստները։ Բայց չէ՞ որ միլիոնավոր ամերիկյան աշխատավորներ ընդհանրապես զրկված են այդպիսի նպաստ ստանալու իրավունքից։ Սոցիալական ապահովության հարցերի գծով Նյու-Յորքի կոմիսար Հենրի Մակարտին վերջերս հաղորդում էր, որ միայն այդ քաղաքում հաշվվում է ավելի քան 367 հազար մարդ, որոնք նպաստ ստա-

նալու իրավունք չունեն և զրկված են գոյություն պահպանելու որևէ միջոցներից։

Գործազուրկների դժբախտությունը շատ ավելի է խորանում այն բանի հետևանքով, որ ամերիկյան աշխատավորները խճճվել են «մաս-մաս վճարելու պայմանով վաճառքի» սիստեմի ոստայնում։

Սովի ուրվականը կախվում է կապիտալիզմի ամենահարուստ երկրի վրա, ԱՄՆ-ի քաղաքներում հաճախակի երևույթ են դարձել գործազուրկների հերթերը բարեգործական ընկերությունների խոհանոցների առջև։ Կապիտալիստական հասարակարգի համար ինչպիսի՞ դաժան մեղադրանք է հնչում այն փաստը, որ միլիոնավոր մարդիկ թերասնվում են կամ սովի մատնվում, թեև վիթխարի պահեստները պայթում են գյուղատնտեսական մթերքների «ավելցուկներից»։ Մոնոպոլիստները չեն էլ մտածում իջեցնել սննդամթերքի գները։ Ընդհակառակը, նույնիսկ սկսվող ճգնաժամի պայմաններում աճում է թանկությունը։

Միլիոնավոր գործազուրկների ողբերգությունը շատ ամերիկացիների աչքեր է բացում։ Նրանք գալիս են այն անխուսափելի եզրակացության, որ գործազրկության տանջանքները կապիտալիստական հասարակարգի ծնունդ են։

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ